Զ «ԿԱՐԳԱՑՈՅՑ» ս ի գրի առեալ ի ձեռն կրօնական ժողովոյ Ազգային կեդր. Վարչութեան, ըստ աւանդութեանց Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ, 'ի դիւրութիւն պաշտօնավարութեան Եկեղեցական դասուն, հրամայեմք ի տպագրութիւն :

**ՊԱՏՐԻԱՐՔ Կ. ՊՈԼՍՈՅ**

**ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ**

1888 *Փետր.* 23

# ԿԱՐԳԱՑՈՅՑ

# ԸՍՏ ԱՒԱՆԴՈՒԹԵԱՆՑ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ





Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Մ. Կ. ՍԱՐԸԵԱՆ

—

1888

# ԿԱՐԳԱՑՈՅՑ

# ԸՍՏ ԱՒԱՆԴՈՒԹԵԱՆՑ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ



## ԳԻՇԵՐ—ԺԱՄ

Լուսարարն կամ փակակալն ի լուր ժամհարին կամ զանգակին լուցանէ զկանթեղս եւ զաշտանակս սեղանոյ եւ բերէ դնէ զգրակալսն շարականաց յերկոսին դասս ։ Ժամօրհնողն եւ բոլոր քահանայք ժողովին յաւանդատունն եւ առնուն փիլոն, սարկաւագն ի պատարագի աւուրս զգենու շապիկ եւ առնու ուրար եւ բուրվառ, իսկ ի լուր աւուրս ուրար եւ բուրվառ միայն, իսկ փոխասաց դպիրք միշտ զգեցցին շապիկս, գան առաջի բեմին եւ երիցս երկրպագեն ։ Ապա ժամօրհնողն երթայ

ի ձախակողմեան դասագլուխն , քահանայք
եւ դպիրք բաժանին ի դասս կարգաւ ։

Ժամօրհնողն Օրհնեալ Տէր մեր · իսկ սար-
կաւագն բուրվառաւ եւ վառ մոմով յատեան
դասու կացեալ՝ յաւարտ Հայր մերին յարէ
անմիջապէս · Օրհնեա , Տէր ։ Ժամօրհնողն
Տէ՛ր , երէ զշրթունս · դարձեալ սարկաւագն
Օրհնեա , Տէր ։ Կրկնէ ժամօրհնողն · Տէ՛ր , երէ
զշրթունս · երեքկնէ սարկաւագն · Օրհնեա ,
Տէր ։ Ժամօրհնողն Օրհնեալ համագոյ · առնու
սարկաւագն զխնկամանն եւ գայ առ ժամ-
օրհնողն եւ յետ խոնարհութեան ասէ ի ձայն ·
Եւ եւս խաղաղութեան · ժամօրհնողն արկանէ
զխունկն եւ ասէ խաչակնքելով · Օրհնութիւն
եւ փառք ։ Դպիրն յետ խոնարհութեան առ
ժամօրհնողն գայ եւ ընթեռնու , Տէր զի բա-
զում · ի թիւ , ի լուր եւ ի պահոց աւուրս ,
պատարագ լինի թէ ոչ ։ Ապա ժամօրհնողն
Փառք Հօր , սարկաւագն Այժմ եւ միշտ , ի
պատարագի լուր աւուրս ի ձայն · Փառք
Հօր եւ ։

---

## ԽՆԿԱՐԿՈՒԹԻՒՆ ԳԻՇԵՐ-ԺԱՄՈՒ (1)

(Ի լուր աւուրս)

*Գայ սարկաւագն առաջի բեմին եւ ինն անգամ խնկարկէ Աւագ խորանին, դառնայ առ եպիսկոպոսն, երիցս, կարգաւ քահանայից եւ դպրաց, մի մի, աջակողմեան սեղանոյն, եթէ կայ, երիցս, մտանէ ի պահարան, անդ սեղանին եւ Աւազանին, երիցս, ելանելով անտի եւ առ երի որմոց գնալով երթայ ի դաւիթ, եւ եթէ իցեն առ սեամբք պատկերք տէրունի եւ սրբոց, երիցս խնկարկէ նախ յաջակողմն ապա առ դրամբ տաճարին դառնալով ի ձախակողմն, մտանէ ի ներքս յեկեղեցին եւ դարձեալ առ երի որմոց գնալով՝ մտանէ ի ձախակողմեանն պահարան, երիցս, սեղանոյն, ելանելով անտի՝ գայ յատեան դա-*

---

(1) *Խնկարկութիւնն անընդհատ։*
*Ուր չիք պատահմամբ իմն սարկաւագ, դպիր եւ լուսարար զայս խնկարկութիւն առնել նախ քան զժամերգութիւնն։*

սու, երիցս առ ժողովուրդն, ժամօրհնողին, կարգաւ քահանայից, դպրաց մի մի, ձախակողմեան սեղանոյն, երիցս; գայ առաջի բեմին, յինն անգամ Աւագ խորանին, երիցս եպիսկոպոսին։ Յետ խոնարհութեան երթայ յաւանդատունն։

Իսկ ի կիւրակէս եւ ի տօնս տէրունիս եպիսկոպոսն գայ յատեան եկեղեցւոյ պարառեալ ի քահանայից, ի սարկաւագաց եւ ի դպրաց եւ ասէ. Օրհնեալ Տէր մեր. եւ այլն ըստ կարգի. Տէր զի բազում ի ձայն. եթէ մի է սարկաւագն յետ խնկարկութեան աւագ սեղանոյն գայ առ եպիսկոպոսն յատեան, կարգաւ նախ աջակողմեան եւ ապա ձախակողմեան քահանայից եւ դպրաց, երթայ ի մկրտարանն եւ ի գաւիթ, գայ յաւանդատունն եւ անտի յատեան դասու առ ժողովուրդն, յինն, դառնայ աւագ խորանին։ Ապա երես առ ժողովուրդն կայ առաջի բեմին մերձ առ գրակալի Աւետարանի, մինչեւ ի Փառք տալն։

---

## ՁՈՅԳ ԲՈՒՐՎԱՌ

Իսկ եթէ օրն հանդիսաւոր է եւ երկու են սարկաւագունք խնկարկեն Աւագ սեղանոյն, դառնան եւ գան առ եպիսկոպոսն, բաժանին ի միմեանց եւ մին աջակողմեան եւ միւսն ձախակողմեան քահանայից եւ դպրաց մի առ մի խնկարկելով երթան մին ի մի եւ միւսն ի միւս պահարանն, ելանելով երթան միաւորին ի գաւթի, ժողովրդեանն՝ որ ի գաւթի, հանդէպ դրանն մեծի, երիցս, ապա միմեանց, երիցս, եւ խոնարհելով միմեանց փոփոխին, մտանեն յեկեղեցին, եւ ի դասու դրան կողմանէ մին ի մի եւ միւսն ի միւս պահարանն մտանեն։ Ելանելով անտի գան միաւորին ի դասու առեանն առ ժողովուրդն խնկարկելով, ապա միմեանց եւ փոփոխին, դարձեալ ժողովրդեանն եւ ապա Աւագ սեղանոյն։ Եւ սպասեն երես առ ժողովուրդ առաջի բեմի մինչեւ ի Փառք տալն․ որ սկսաւն զՏէր զի բազումն, այսինքն ճախակողմեան դասավարն առան-

*Ծինն եղանակեսցէ* **Ողորմութեամբ քով.** *Իսկ յեղանակել աջակողմեան դասաւորին* **Փառք Հօր**, *սարկաւագունք խնկարկեն սեղանին եւ դասուն առ եպիսկոպոսն, զկնի խնկարկութեանն՝ խոնարհելով եպիսկոպոսին մեկնին։ Ապա զմի տուն* **Յիշեսցուք**ին *միաբան երգելով մտանեն ի դասն։*

**Յիշեսցուք**, *միշտ ի պատարագի աւուրս*, **Անբաժանելի** *տուն առ տուն ի հանդիսաւոր աւուրս եւ ի տօնս տէրունականս։* **Զարթուցեալքս** *ի ձայն, ի պատարագի աւուրս, պար առեալ առաջի բեմին. ի թիւ յայլ աւուրս։ Ի լուր եւ ի պահոց աւուրս պատարագի*, **Աշխարհ ամենայն**. *ապա թէ ոչ՝ ի լուր աւուրս յիսուն եւ ի պահոց աւուրս հարիւր* **Տէր ողորմեա** *ասէ ժամօրհնողն։ Իսկ ի տօնս տէրունականս եւ ի կիւրակէս, ի վերջին երիս աւուրս Աւագ շաբաթու* **Առաւօտ լուսոյ։ Զքեն գոհանամք** *ժամարարին է* (1),

(1) *Յամենայն սկզբնաւորութիւնս ընթերցուածոց որ առաջի բեմի, խոնարհութիւն առ եպիսկոպոսն։*

եթէ ժամարարն եպիսկոպոս է կամ վարդապետ դնի գորգ առաջի բեմի ։ Օրհնեալ Տէր մերն եպիսկոպոսին է ։

Ի պատարագի աւուրս կանոնագլուխ , միայն թէ ի կիւրակէս յորս պատահի Ս . Աստուածածնի տօն եւ ի տօնս տէրունի , զաւուր Օրհնութիւնն յետ երից տանց Հանգստեան շարականի քաղել , եւ մի՛ Հոգեգալստեան ասել շարական , եթէ ունի Օրհնութիւնն ։

Յասել կանոնագլխոյ լուսարարն բերէ դնէ յառեան դասու զմեծ գրակալն եւ սարկաւագն առեալ զԱւետարանն բշխունաւն եւ վառ մոմ ի ձեռին տանի առ ժամօրհնողն , որ բանայ ի տօնս խաչի , ըստ ձայնին՝ զխաչելութեանն , ի կիւրակէս զտաճարին եւ յայլ աւուրս զՀանգստեանն , իսկ ի շաբաթս Մեծի-Պահոց , եթէ պատարագ կայ , զՕրհնութիւնս ապաշխարութեան, ըստ ձայնի աւուրն։ Ապա սարկաւագն զետեղէ զԱւետարանն ի վերայ գրակալին, եւ գան անդէն երկու մոմակալք եւ աստի եւ անտի գրակալին կանգնին ։

# ԽՆԿԱՐԿՈՒԹԻՒՆ Ի ԴԱՍՈՒ

*Ցասել շարականին Հոգեգալստեան սարկաւագն խնկարկէ Աւագ խորանին, եպիսկոպոսին, կարգաւ քահանայից եւ դպրաց, սեղանոյն պահարանի եւ. Աւազանին, անտի ելանելով քայլ առ քայլ խնկարկութեամբ ուղղակի գայ յատեանն առ ժողովուրդն, ապա ժամօրհնողին, կարգաւ քահանայից եւ դպրաց, սեղանոյն պահարանի, գայ ուղղակի յատեան դասու, դարձեալ առ ժողովուրդն, Աւագ խորանին, եպիսկոպոսին։ Ապա երթայ կանգնի առաջի Աւետարանի ի միջի ժողովրդեան։ Եթէ իցէ զոյգ բուրվառ, աւագ խորանին, եպիսկոպոսին, բաժանին, մին երթայ առ ժամօրհնողն, քահանայից եւ դպրաց կարգաւ, մտանէ յաւանդատունն. իսկ միւսն նոյնպէս յետ կարգաւ խնկարկութեան մտանէ ի Մկրտարան։ Ելանելով անտի ուղղակի գան միաւորին յատեան դասու, ժողովրդեանն, դառնան աւագ խորանին, Եպիսկոպոսին։*

*Այս ձեւ է խնկարկութեան, յերգն Տա-*

բածեալ, յՕրհնութիւնս կիւրակէից եւ սըր-բոց, ի Փառք յարութեան քո Տէրն, ի Փառք ի բարձունսն, ի Սուրբ Աստուածսն, ի Հա-ւատամքն, ի Լոյս զուարթն

Ցասել Հանգստեան սաղմոսին ժամարարն շուրջառազգեստ գայ յատեան դասուն, եթէ եպիսկոպոս է ժամարարն կամ վարդապետ, առնու գաւազան եւ խաչ եւ ի տալն խա-ղաղութիւն սարկաւագն խնկարկէ երիցս, դարձեալ նոյնպէս ի սկսանել Աւետարանին, որոյ յաւարտն սարկաւագն յետ երիցս խըն-կարկութեան մտանէ ի դասն ընդ մոմակալս եւ ընդ ժամարարին, որ առնու բշխունաւն, զԱւետարանն եւ դառնայ յԱւագ սեղանն եւ սոքա չորեքին կան անդ կազմելով ատեան կիսակլոր, դպրացն ի վեր բարձրացեալ ու-նելով զմոմսն. եթէ եպիսկոպոս է կամ վար-դապետ, լուսարարապետն առնու ի նմանէ զգաւազանն եւ զխաչ եւ տայ զԱւետարանն. Ժամօրհնողն Հօգւոց. ժամարարն Քրիստո՛ս որդի Աստուծոյ. յասել ժամօրհնողին զՀայր մերն ժամարարն դնէ զԱւետարանն եւ հանէ

զշուրջառն եւ մոմակալ դպիրք գնան ի պահարան, եթէ օրն չէ տէրունի։

Օրհնութիւնն ի դասն է, այլ սակայն ի հանդիսական աւուրս եւ ի տօնս տէրունիս յընթեռնուլ Աւետարանին առնուն քահանայք շուրջառ եւ փառ մոմեղէն, եւ յասելն Հոգւոց զոյգ զոյգ արտաքոյ դասուն կան, իսկ դպիրք երթան եւ ի միջի ժողովրդեան ընդ հիւսիւսային եւ հարաւային կողմանս դէմ առ դէմ դասս կազմեն գրակալս շարականաց առաջի ունելով։ Ջահք որ ի դասու կամ ի բեմին վառեցին։ Եպիսկոպոսն յետ օրհնելոյ գլխունկն յատենի դասու, առաջնորդութեամբ քահանայից գայ յատեան եկեղեցւոյ. շարական Օրհնութեան տուն առ տուն, իսկ զհետեւականն երիս եւ երիս տուննս։ Իսկ մոմակալք առաջի բեմին աստի եւ անտի կացեալ երես առ ժողովուրդն ի վեր ունին զմոմսն։ Սարկաւագն յետ խնկարկութեան (տես յերես 12) կացցէ ի ձախակողմն առ դպրին, երես առ ժողովուրդն։ Եթէ զոյգ իցէ բուրվառն (տես յերես 9)։

Ի սկսանել Օրհնութեան ժամարարն մի-այնակ ելցէ ի դանձանակ, բուրվառ ի ձեռին ի միջի ժողովրդեան խնկարկելով։

Ի տալն դպրաց Փառք Հօր մոմակալ դը-պիրքն եւ սարկաւագն սակաւ ինչ յառա-ջանան դէպ յատեան դասու եւ դառնան Ա-ւագ խորանին։ Սարկաւագն Աւագ խորա-նին, երթայ յատեան· եպիսկոպոսին, ապա դնէ ի բաց զբուրվառն եւ գայ յատեան եւ կայ ի մէջ մոմակալաց։

Յետ Մաղթանքին՝ Քարոզ· ի թիւ յա-մենայն աւուրս, պատարագ լինի թէ ոչ։ Իսկ եթէ օրհնութիւնն յատեանն է, ի ձայն, բացի Ծաղկազարդի, Աւագ Հինգշաբթի, Ա-ւագ Շաբաթու աւուրցն, պար առեալ։ Ի լուր աւուրս եւ ի հասարակ կիւրակէս զԱ-ւէլուքն եւ զԹագաւորքն դաս առ դաս, ե-թէ ձայնն է Աձ յաւելուլ. Դասք հրեշտակաց։ Իսկ յակում աւուրս ի սկսանել զՓառքն ալէ-լուիայի մոտանեն յատեան դասու, լուսարա-րապետն առնու զշուրջառ եպիսկոպոսին, զգաւազանն եւ զխաչ։ Քահանայք հանեն զշուրջառսն։

## ԱՅՍՕՐ ԴԱՍՔ

Ժամարարն Աւետարան ի գիրկս, սաղաւարտ ի գլուխ. շուրջառազգեստ, սարկաւագ եւ երկու մոմակալ առաջի ունելով ի պահարանէ ելանէ ի բեմ, եւ յաջկոյս սեղանոյն, երես առ ժողովուրդն՝ կանգնի, առընթեր ունելով զմին ի մոմակալաց, իսկ սարկաւագն կանգնի ի միւս կողմն, զմիւս մոմակալն ընդիւր ունելով։ Մոմք ի վեր միշտ։ Ի սկսանել Բազում համարձակութիւն. սարկաւագն հանդերձ երկոքին մոմակալօք իջանէ ընդ աջակողմեան աստիճանսն յատեան դասու, եւ անդ զբուրվառն փոխանակէ ընդ գաւազանի եպիսկոպոսին, որ օրհնէ զխունկն եւ խընկարկէ Աւետ. խորանին (տես յերես 7) առջի մտանել կրկին ի դասն ուղղակի եպիսկոպոսն դայ յատեան խնկարկէ քահանայից եւ դպրաց կարգաւ, եւ ապա ելանէ ի բեմն, ուր առաջի սեղանոյն հանդէպ ժողովրդեան վերստին կանգնի սարկաւագն, որում խընկարկէ եպիսկոպոսն, նոյն եւ ժամարարին եւ ապա Սեղանոյն։ Իսկ ի սկսանել դպրաց Եւ

յործամ․ Հնչին քշոցք, սարկաւագն զգաւազանն ի բաց դնէ, իսկ եպիսկոպոսն խնկարկէ ժամարարին, եւ թափօրաւ ընդ յետկոյս խորանին, այսինքն ընդ իւր ունելով զերկոսին մոմակալս եւ զժամարարն, գայ յատեան եւ տայ սարկաւագին զբուրվառն, առնու զԱւետարան ի ժամարարէն, խաչակնքէ զչորեսին կողմունս աշխարհի, եւ դառնայ դնէ ի վերայ սեղանոյն։ Ի խաչակնքելն՝ ժամարարն գնայ ի պահարան եւ սարկաւագն խնկարկէ Աւետարանին, եւ ապա տայ ըզբուրվառն եպիսկոպոսին, որ խնկարկէ խորանին, քշոցակրացն աջակողմեան, փոքր սեղանոյն, դառնայ առ ժողովուրդն քայլ առ քայլ՝ ժողովրդեանն, ի միջի բեմին քահանայից եւ դպրաց առ հասարակ, դարձեալ քայլ առ քայլ, ժողովրդեան, պահարանի դրան, եւ դառնայ, փոքր սեղանոյն, ձախակողմեան քշոցակրաց եւ սարկաւագին, որ ընդ մոմակալսն դառնայ խորանին, երբ եպիսկոպոսն յետ խնկարկութեանն Աւագ սեղանին՝ տայ զբուրվառն։ Ապա եպիսկո-

պուն ի ձայն ասէ․ Այսօր դասք հրեշտակաց. յայնժամ քահանայք եւ դպիրք երթան յաւանդատուն, իսկ եպիսկոպոսն շարունակէ անդ ի բեմի զՄաղթանքսն մինչ ցհարցն։ Ապա նոյն թափորաւ երթայ եւ ինքն յաւանդատուն, չիջանին ջահք։

Իսկ եթէ միայնակ իցէ քահանայն, նոյն թափորաւ դայ եւ կացցէ առընթեր սեղանոյն, Աւետարան ի գիրկս, եւ յասել Բազում համարձակութիւն․ դնէ ի վերայ սեղանոյն զԱւետարանն եւ ելանէ ի թափոր, խնկարկէ եւ վերաբերէ զԱւետարանն ինքնին եւ մի եւ նոյն թափորաւ եւ վերոյգրեալ եղանակաւ։

---

## ԱՌԱՒՕՏԵԱՆ—ԺԱՄ

Մարկաւագն եւ երկու փոխասաց դպիրք գան առ եպիսկոպոսն, եւ յետ խոնարհութեան, դառնան եւ երկրպագեն առաջի բեմին․ Ժամօրհնողն Լցաք, փոխ, Օրհնեալ ես․ վեց տուն, միշտ ի ձայն, սոյնպէս փոխք, որք ունին երգ կամ շարական, ի ձայն, երեք

տուն միայն, իսկ զՄիացեալսն քաղել լուին։ Ի յետին երկոսին տունս ամենայն շարականաց Նախ Փառք Հօր եւ յետոյ ի վերջին տունն Այժմ եւ միշտ. միշտ այսպէս։ Չկնի քարոզին սարկաւագն եւ զկնի փոխին դպիրք զան յատեան դասու եւ կան յոտնկայս. միշտ այսպէս։ Յայն եկեղեցիս ուր դպիրք յոյժ սակաւք եւ քահանայ մի իցեն, առնել զժամերգութիւնն յատեան դասու։

Բարոզ. վասն սուրբ տեղւոյս. պար առեալ ի սարկաւագաց, դպրացն նմանապէս պար առեալ յատեան դասու, երգեն զՏէր ողորմեայն եւ Եղիցին եւ Արին եւ Փառք Յարութեանն դաս առ դաս։ Ժամարարին է Դու ես թագաւորն, որ երթայ ապա ի պահարան։ Յասել Թագաւորեսցէ. ժամարարն Աւետարան ի գիրկս, սարկաւագ եւ երկու մոմակալ առաջի՝ ելանէ ի բեմ։ Խնկարկութիւն երիցս, նախ առաջի գրան պահարանի, երկրորդն ի բեմի, երրորդն առ ժողովուրդն. յերգել դպրին Օրհնեա անձն իմ. խաչակնքէ ժամարարն զժողովուրդն, եւ ի

դառնալն յԱւագ սեղան, լուսարարն դնէ զմեծ գրակակալն յաջակողմն բեմին, մոմակալք գան եւ կան դէմ առ դէմ առ գրակալաւ. սարկաւագն իջանէ ընդ աջակողմեան աստիճանսն ի դաս եւ կայ առաջի գրակալին։ Ժամարարն տայ զԽաղաղութիւնն Աւետարանաւն եւ ապա դնէ զայն ի վերայ գրակալին։ Աւետարան ըստ տօնացուցի։ Ցաւարտն զԱւետարանն տայ համբուրել եպիսկոպոսին, ասելով. Քրիստոս յարեաւ ի մեռելոց, յորմէ պատասխանի առնու Օրհնեալ է յարութիւնն Քրիստոսի։ Եւ ապա յատենի բեմին խաչակնքելով Աւետարանաւ զժողովուրդն դառնայ ընդ մոմակալսն եւ կայ առաջի սեղանոյն ընդ աջակողմն առընթեր։ Դպիրք Փառք յարութեան։ Սարկաւագն խընկարկէ (տես յերես 12) ապա ելանէ ի բեմ եւ կայ առաջի բեմին ընդ ձախակողմն։ Քարոզ Զուարճացեալքս միշտ։ Ժամարարն Ամենակեցոյց ի բեմի միշտ, միայն ի Մեծի պահոց կիւրակէս առանց շուրջառի, ապա երթայ Թափօրաւն ի պահարան, բայց մոմակալք

դան եւ կան առաջի բեմին, երես ի սեղան եւ խոնարհ մոմք, բայց ի Տէր Երկնիցին մոմք ի բարձր եւ երես առ ժողովուրդն. զՏէր Երկնիցն ըստ Շնորհալւոյն ի բարձր ասել պիտի, որոյ ի Փառք Հօրին ելանեն յատեան եկեղեցւոյ՝ միշտ ի կիւրակէս, եւ ի հանդիսաւոր տօնս։ Եւ ասեն Փառք ի բարձունս-յատեանն, ձեռնամուխ, բաց յաւուրցն, եթէ ըստ տօնացուցի յատեան ելեալ իցեն շուրջառօք եւ մոմեղինօք։ Իսկ յԱմենայն ժամն բազկատարած։ Ժամարարն ելցէ ի գանձանակ, զկնի իւր ունելով զգանձանակն եկեղեցւոյ եւ աղքատաց։ Փառք, պատիւն եպիսկոպոսին է։ Ի Սուրբ Աստուածն խնկարկութիւն, (տես յերես 12) բայց ոչ ի կիւրակէս եւ ի տօնս տէրունիս՝ յորս իցէ Աւետարան։ Փրկեա զմեզն եպիսկոպոսին է։ Գիրքն անդաստան լինի թէ ոչ, շուրջառազգեստ, այլ ոչ մոմակալաւ։ Աւետարանն բժշկութեան լինի եւ այլ, յատեան դասու միշտ։ Ցորում աւուր՝ զՕրհնութիւնն յատեանն ասեն, զՄանկունքն եւս եւ զԵրգն եւ զՔրիս-

տոս Աստուած մերն *յատեանն ասել , շուրջառօք եւ մոմեղինօք* ։ *Ի մեծի պահոց աւուրս զկնի* Սուրբ ես տէրին , *որ հետեւակ ժամարարին է , եւ ի ճաշու ի զկնի* Յոյս կենացի՝ Տէր ամենակալ ։

---

## ԱՆԴԱՍՏԱՆ

*Անդաստան յատենի եկեղեցւոյ , սարկաւագն ընդ դպիրս Թափորաւ* ։ Եւ եւս խաղաղութեան ։ *Եպիսկոպոսն* Տէր ողորմեա , *սարկաւագն ընդ դպիրս Թափորաւ* Վասն ի վերուստ , *եպիսկոպոսն* Տէր ողորմեա , *սարկաւագն ընդ դպիրս Թափորաւ* ։ Ողորմեաց *եպիսկոպոսն* Տէր ողորմեա , *սարկաւագն խնկարկէ երիցս յասել* Օրհնութիւն եւ Փառք ։ Օրհնեսցի ։ Այս Նշանաւ ։ Յանուն Հօր ։ Օրհնութիւն եւ փառք ։ *այսպէս չորիցս ի չորիս կողմանս աշխարհի* ։ *Յասել եպիսկոպոսին* Օրհնութիւն եւ փառք *մտանեն ամենեքին ի դաս եւ հանեն զշուրջառս քահանայք , եւ սարկաւագն ընդ մոմակալս դառնայ խընկարկէ , ի* Պահպանիչին *ի խաչակնքել եպիս-*

կոպոսի զժողովուրդն առնելով․ Պահեա եւ օրհնեա։

---

## ԱՐԵՒԱԳԱԼ

Ի շաբաթապահս Արեւագալ, բաց ի Ծնընդեան եւ Ս․ Յակոբայ, եւ Ս․ Լուսաւորչի պահոցն։

---

## ՃԱՇՈՒ

Ի պահոց աւուրս չորեքշաբթի եւ ուրբաթ, Ողորմեա․ միայն զՕրհնեմք զքեզն երգելով։

---

## ԺԱՄԱՄՈՒՏ

Ի ժամամուտի շարականի լուսարարն բերէ դնէ զմեծ գրակալն յառեան դասու, յընթերցման Թղթոցն Առաքելական առնու ջուրջառ քահանայն շրջանի, եւ դայ յառեան եւ ընդ մոմակալսն դառնալով ընթեռնու զԱւետարան, յետ ընթերցման բարձրացուցանէ զԱւետարանն եւ առէ զՀաւատամքն, ժողովուրդն ձեռնամած ձայնակցի

լուին, խնկարկութիւն (տես յերես 12) իջուցանէ քահանայն զԱւետարանն յասելն Իսկ որք ասեն. Իսկ մեր փառաւորեսցուքն եպիսկոպոսին է, որ առէ յետ համբուրելոյ զԱւետարանն, եւ երթայ կայ յատեան դասու պար առեալ ի քահանայից եւ ի սարկաւագաց։ Եպիսկոպոսն դառնայ առ ժողովուրդն եւ խաչակնքէ ասելով, Տէր Աստուած օրհնեսցէ. Հայր մեր, խնկարկութիւն միշտ յասելն Օրհնեալ Հայր սուրբ, Որդին սուրբ, Հոգին սուրբ, Օրհնութիւն եւ փառք, Օրհնութիւն Հօր. Օրհնեալ եղերուք։ Քահանայն տայ համբուրել եպիսկոպոսին, քահանայից, դպրաց եւ ժողովրդեան զԱւետարանն եւ ապա ընդ սարկաւագին եւ ընդ մոմակալսն դառնայ եւ յետ երից երկրպագութեան՝ երթայ ի պահարան։

Այն երից երկրպագութիւն պարտ է առնել ի սկիզբն եւ ի վերջ ժամերգութեանց, միշտ։

---

## ԵՐԵԿՈՅԵԱՆ—ԺԱՄ

Ժամօրհնողն Օրհնեալ տէր մեր. Ես առ Աստուած։ Խոնարհեցո եւ Ապրեցո, ըման եւ

ի ձայն, եթէ չիցէ Լոյս զուարթ։ Լոյս ձայ-
նիցն ժամարարին է, Եւ Եւս խաղաղութեան․
ի թիւ։ Խնկարկութիւն ի Սուրբ Աստուածն․
(տես յերես 12)։ Ի շաբաթս, յորս պատա-
հին տօնք Առաքելոց, ի Համբարձի չարականի
մի անել զԵրկնաքաղաքացին այլ զԻ քեն հայ-
ցեմքն։ Հայր գթածն հետեւակ ժամարարին է
խնկել զտունս ի կիրակամուտ։

Եթէ նախատօնակ կայ, զկնի Յոյս գթածի
եղանեն յատեան, սարկաւագն Եւ Եւս խա-
ղաղութեան․ ի ձայն։ Ժամարարն առնու ի
գիրկս Աւետարան եւ ընդ մոմակալս գայ
յատեան դասու եւ կայ հանդէպ ժողովրդեանն։
Խնկարկութիւնն (տես յերես 12)․ ի Հար-
ցին եպիսկոպոսն տալով զգաւազանն սարկա-
ւագին, առնու զբուրվառն եւ օրհնէ զխունկն
եւ խնկարկէ Աւագ սեղանոյ, երթայ առ
Աւագանն, ի գաւիթ եւ անտի յատեան,
քահանայից կարգաւ եւայլն։ Յետ խնկարկու-
թեան առնու զգաւազանն եւ համբուրէ զԱ-
ւետարանն եւ գայ ի տեղի իւր։ Քահանայք
յետ խոնարհութեան առ եպիսկոպոսն, զոյգ-

զոյգ երթան ի համբոյր Աւետարանին ։ Եթէ միայն է քահանայն , Աւետարանն դնէ ի վերայ բեմի բշխունաւ եւ զնոյնն առնէ ըստ կարգին ։

---

## ԽԱՂԱՂԱԿԱՆ

Ի չաբաթապահս , բաց ի Եղիական , Ս. Լուսաւորչի եւ Ս. Յակոբայ պահոցն , փոխք , քման , բաց ի Կարդալէն եւ ասել միշտ Շընորհեա մեզ՝ Տէր ։

---

## ՀԱՆԳՍՏԵԱՆ—ԺԱՄ

Եթէ չկայ Խաղաղական , կից ընդ երեկոյեան ժամերգութեան , ժամօրհնողն՝ Օրհնեալ տէր մեր ։ Նշանեցաւ եւ Ի կարդալ եւ Աւետարան եթէ առ վաղիւ պատարագ կայ ։ Այս ժամերգութիւնն անխափան ։

---

## ՀՍԿՈՒՄՆ

Եթէ հսկումն առնել հարկ ի վերայ կայ , յերկրորդում ժամու գիշերոյ , Սկսցէ· զկնի

Հաւատով խոստովանիմին՝ չարականք Ապաշխարութեան երկերկու ։ Զորեքին Աւետարանք բժշկութեան, կարգաւ մինչեւ ցվերջ ութ չարականաց այսպէս ։ Ապա ըստ ձայնի Խաչի չարական, Օրհնութիւնն միայն. յետոյ Աւետարան Ղուկ. ԻԲ. 39—47 ։ Պահպանեա ։ Ապա յատեան դասու պար առեալ, յապաշխարութեան Թագաւորքէն մի հատ, ըստ աւուրն, Տէր ողորմեա, ի ծունր անկեալ. Սուրբ զԱստուածածինն, Զհանգստեան. Փառք քեզ՝ Տէր ։



# Ս. ՊԱՏԱՐԱԳ

## ՍՊԱՍ

*Ցերգել դպրաց* զԽորհուրդ խորին, *Նախասարկաւագն հանդերձ մոմակալ դպրօք կայ առաջի ժամարարին յաւանդատունն, որ առնու խաչ եւ գաւազան, եթէ վարդապետ է կամ եպիսկոպոս, եւ ասէ.* Եւ եւս խաղաղութեան. *ապա խնկարկէ ժամարարին*(1), *նոյն առ դրանն պահարանի եւ յատեան դասու։ Իսկ ժամարարն զկնի իւր ունելով եւ երկուս սարկաւագունս կամ դպիրս, գայ ձեռն ի կուրծս առաջի բեմին եւ առնէ զլուացումն ի ծածուկ. ի հանդիսաւոր աւուրս ի ձայն, տուն առ տուն ընդ վերաբերող սարկաւագին։ Ցերգել դպրաց.* Թագաւոր երկնաւոր զեկեղեցի քո անշարժ պահեա. *դառնայ առ ժողովուրդն եւ օրհնէ խաչակնքելով*(2)։ *Եւ*

---

(1) *Խնկարկութիւնն միշտ երիցս։*

(2) *Օրհնելն միշտ խաչակնքելով է, երիցս խնկարկութեամբ նախասարկաւագին։*

եթէ եպիսկոպոս է կամ վարդապետ, խաչ եւ գաւազանն տայ վերաբերող սարկաւագին, ապա Խոստովանիմ առաջի Աստուծոյ եւ սրբուհւոյ Աստուածածնին եւ առաջի ամենայն սրբոց. դառնայ ժողովրդեան գլուխ ի խոնարհ, ընդ նմա սարկաւագունք եւ մոմակալք: Ժամօրհնողն գայ յատեան Ողորմեացի. ուր չիք քահանայ բացի ժամարարէ, սարկաւագն Քարոզ. Եկեալքս. եթէ եպիսկոպոս է կամ վարդապետ, առնու զգաւազանն եւ զխաչ, բազկատարած խաչակնքէ յԱզատեսցէին եւ յՈւղղեսցէին: Ի մէջ տաճարիս ի թիւ միշտ: յԵրկիւղիւ երկրպագանեմքին երկրպագէ խնկարկութեամբ սարկաւագին, որ ընդ իւր առեալ զմոմակալն ձախակողմեան՝ գայ առ եպիսկոպոսն եւ խնկարկէ նմա: Սաղմոսելով սարկաւագ եւ ժամարար զԴատ արա ինձ. տուն առ տուն, ընդ աստիճանսն աջակողմեան գան ի սեղան սպասու եւ բոլորին

նդ: Ի ձայն ի յարկի սրբութեան. յԵրկիւղիւ կրպագանեմքին ժամարարն երկրպագէ եւ

սարկաւագն խնկարկէ ։ Ցաւարան ձգի վարագոյր ։ Մի՛ ձգել, եթէ խորհրդածուն եպիսկոպոս է. որ ի հանդիսաւոր աւուրս ի ծունր անկեալ բացաւ գլխով ասէ զԱմէնակալ ։ Դպիրք կամ սարկաւագունք երկու ընդ յետսկոյս կալով եպիսկոպոսին, ունին զԹագն, իսկ երկու սարկաւագունք եւս ի ծունր առ ժամարարաւն եւ մօտ ի ձեռս ունին զՄորհրդատետրն ։ Դպիրք Ընտրեալ. յաւարտն՝ Նախասարկաւագն Օրհնեա՝ Տէր, եպիսկոպոսն ի ձայն, Զի քո՛ է. ձգի վարագոյր ։

Ժամարարն դնէ զբազկալն. Նախասարկաւագըն մօտ ի ձեռսն առնու զսպասն եւ ի ձախոյ կողմանէ տայ ասելով. Ես եւս խաղաղութեան. Ժամարարն յետ օրհնելոյ զնշխարն ասէ. Յիշատակ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ բազմեալ հանգչի. դնէ ի վերայ մաղզմային, զոր դնէ յետոյ ի վերայ դաստառակին. երբ Հետեւեալ սարկաւագն ընդ աջակողմն կալով տայ զբաժակն. ասելով Ես եւս խաղաղութեան. Ժամարարն օրհնէ զբաժակն եւ ըմպէ

խաչանիշ ի սկիհն առնելով. Որ ի Գողգոթա-յերկրպագին Օրհնեցէքն խաչակնքէ, նախ զնշխարն եւ ապա զբաժակն: Ի սկսանել Տէր Աստուած մեր. դնէ զմաղզմայն ի վերայ սկիհին. եւ յՕրհնեի դու Տէր, օրհնեա՛յն խաչակնքէ զընծայն, զոր սքողէ զՏէր բազմութեացն սաղմոսելով ըստ նախասարկաւագին, տուն առ տուն: Այսպէս նախասարկաւագն Օրհնեա Տէր(1), երիցս ժամարարն խաչակնքէ, երիցս ասելով Հոգին սուրբ եկեսցէ: Նախասարկաւագն Եւ եւս խաղաղութեան. ժամարարն օրհնէ զխունկն, առնու զբուրվառն եւ խնկարկէ ասելով. Խունկ մատուցանեմ: Բաց մնայ խորհրդանոցն եւ երկու մոմք ի վառ մինչեւ ցվերջ վերաբերմանն: Նախասարկաւագն քառաթեւ խաչ յաջ, մոմ ի ձախ

---

(1) Նախ Օրհնեա, Տէր:
Երկրորդ անգամ Եւ օրհնեա, Տէր:
Երրորդ անգամ Ամէն. օրհնեա, Տէր:
Այս օրինակ ասել. Որով զհացսն, Որով զգինիսն եւ Որով զհացս եւ զգինիսն:

ձեռս, հանդէպ ժողովրդեան, կայ սեղանոյն յաջակողմն, մոմակալք եւ քշոցակիրք եւս նոյնպէս, կարգաւ աստի եւ անտի սեղանոյն։

---

## ԺԱՄԱՄՈՒՏ

Ի բանալ վարագուրին ժամարարն ի թափոր ելանէ թագ ի գլուխ, եթէ եպիսկոպոս է կամ վարդապետ, առնու խաչ։ Խնկարկէ սեղանոյն, յառաջոյ ունելով զնախասարկաւագն, ընծային, ի յետուստ սեղանոյն խընկարկութեամբ գայ առ սեղանն, վերստին խնկարկէ եւ երբ երթայ դէպ ի փոքր սեղանն ընդ հիւսիս, մոմակալք եւ քշոցակիրք գան եւ սպասեն ընդ աստիճան աջակողմեան, նախասարկաւագն յառաջոյ, ի յետուստ նորա մոմակալք, ապա ժամարարն եւ յետոյ քշոցակիրք, իջանեն ի դաս։ Մոմակալք եւ քշոցակիրք առաջի դրան պահարանի սպասեն, ժամարարն ընդ նախասարկաւագին երթայ առ եպիսկոպոսն, խնկարկութիւն կարգաւ քահանայից, մտանէ ի պա

հարան, ապա գայ ուղղակի Թափորաւն յատեան դասու՛, առ դպիրս, ժամօրհնողին՛, քահանայից կարգաւ, աւանդատան սեղանոյն, փոքր խորանոյն, եւանէ ընդ մոմակալսն ի բեմ․ Նախասարկաւագն երթայ ի դաս եւ առաջի բեմին կայ երես առ ժողովուրդն, մոմակալք եւ քշոցակիրք զոյգ զոյգ կարգաւ առ ընթեր սեղանոյն երես առ ժողովուրդ, աստի եւ անտի կան, իսկ ժամարարն յատեան բեմի գալով խոնարհէ ժողովրդեան, ապա դառնայ ի սեղան, յաջ ու ձախ սարկաւագաց սեղանոյն, երկրպագէ եւ տայ զբուրվառն հետեւակ սարկաւագին, որ տայ զայն Նախասարկաւագին, առնլով ի նմանէ զխաչն, իսկ ի դառնալ ժամարարին ի սեղանն, մոմակալք եւս դառնալով կան յատեան բեմի երես ի սեղան, եւ քշոցակիրք եւս երթան եւ դէմ առ դէմ կան առ որմովք խորանոյն ։ Նախասարկաւագն ի դասէ Օրհնեա Տէր․ խնկարկութիւն․ միշտ խնկարկութիւն յամենայն օրհնեա տէրս․ ժամարարն Օրհնեալ թագաւո-

րութիւՆՆ Հօր խաչակնքելով զանձն ։ Դպիրն ասէ ժամամուտ առաջի բեմի, Նախասարկաւագն Եւ Եւս խաղաղութեան. խնկարկութիւն անընդհատ, ժամարարին՝ յօրհնեա՝ Տէրին ի տալ զխաղաղութիւն ժողովրդեան, յԱստուծոյ Երկրպագեսցուքին սեղանոյն յԱռաջի քո տէրին Աւագ սեղանոյն ։ Ի Տէր Աստուած մերին առանց խնկարկութեան ընդ աստիճանսն ձախակողմեան Նախասարկաւագն ելանէ ի բեմ եւ կայ մեկուսի մերձ ի գլուխ ձախակողմեան քշոցակիր դպրաց ։ Ի Փառք Հօրն շարականին վերաբերող սարկաւագն գայ առ ժամարարն, երկրպագէ ընդ ժամարարին խնկարկութեամբ Նախասարկաւագին, եւ առնու բշխուն, մոմակալք եւ Նախասարկաւագն յաջակողմեան դուռնն սեղանոյն գան, ժամարարն առնու ի ձեռս զԱւետարանն ասելով ․ Տէր Աստուած մեր ․ զոր բարձրացուցանէ ի վեր ասելով ․ Զի քո է ․ եւ յետ համբուրելոյ՝ տայ սարկաւագին, որ գոչէ Պրօսխումէ ։ Ի Սուրբ Աստուածի խնկարկութեան ի յետուստ սեղանոյ սոքա գան յատեան բ

մի եւ դպիրն որ զգիրքն ընթեռնլոց է համբուրէ զԱւետարանն եւ ապա զաջ եպիսկոպոսին, սարկաւագն Օրհնեա տէր ի թիւ եւ խաչակնքէ ժամարարն։ Մոմակալք ի պահարան երթան, լուսարարն զմեծ գրակալն յատեան դասու դնէ, սարկաւագն յունկն ժամարարին ընթեռնու զԱւետարանն ծածուկ։ Եթէ եպիսկոպոսն է ժամարարն եւ առաջնորդ վիճակի, երկրպագէ սեղանոյն եւ երթայ բազմել յաթոռ խաչիւ եւ գաւազանաւ եւ սարկաւագն ի ծունր ընթեռնու զԱւետարանն ի ծածուկ։ Ի գրքի եւ յԱւետարանի ընթերցուածս լռութիւն, մի երկրպագութիւն եւ աղօթք, ունկնդրութիւն Ս. գրոց նստուկ, եւ Աւետարանին՝ բացագլուխ եւ յոտնկայս եւ երկիւղածութեամբ։

Յընթեռնուլ առաքելական թղթոյ նախասարկաւագն առնու զբուրվառն եւ մոմակալք լուցանեն զմոմս եւ յաւարտն յատեան բեմի գան. դպիրք երգեն Ալէլուիա, վերաբերողն Ալէլուիա օրհի. ապա երկրպագէ սեղանոյն եւ ժամարարին համբուրէ զաջ եւ

դառնայ գայ առ մոմակալն, որք կան մեկուսի ի ձախակողմն բեմին. յաւել Սրբոյ Աւետարանիս. Նախասարկաւագն իջանէ ի դաս եւ կայ առաջի բեմի. ի Փառք քեզ տէր Աստուած մերին քշոցք հնչին, ի Մեծի պահս ոչ: Ի Հաւատամքին սարկաւագն բարձրացուցանէ զԱւետարան ի տես ժողովրդեան, ի Մեծի պահս ոչ: Մոմակալք աստի եւ անտի առ ընթեր սեղանոյն ի վեր ունին զմոմսն, երես ի սեղան.

Խնկարկութիւն (տես յերես 12) ապա ելանէ ի բեմ, ժողովրդեանն, յատեանն, դառնայ քշոցակրաց յաջ եւ ի ձախ, սեղանոյն:

Խնկարկութիւնն ի հանգիստաւոր աւուրս զոյգ բուրվառաւ. (տես յերես 12) բայց վերջին փոփոխիլն ի բեմն, այսինքն ժողովրդեան, ապա միմեանց դէմ առ դէմ, խոնարհելով միմեանց փոփոխին եւ դարձեալ խնկարկեն ժողովրդեան եւայլն:

Իսկ եթէ ի բեմի խնկարկութիւն պէտք իցէ, այսպէս. ինն Աւագ սեղանոյն, ի յ տուստ սեղանոյն երթայ գայ յաջակողմն

ւագ սեղանոյն ինն, սարկաւագաց, փոքր խորանին, պահարանի դրան, առ ժողովուրդն դառնալով քայլ առ քայլ, քահանայից որ ի դասու, յատեան բեմի, դպրաց եւ ժողովրդեան ինն անգամ, քահանայից որ ի գասու, կարգաւ, քայլ առ քայլ, դրանն պահարանի, փոքր խորանին դարձցի, գայ առ ձախակողմեան սարկաւագունս, նոցա եւ Աւագ խորանին. ինն:

Եթէ զոյգ իցէ բուրվառն, երկոքին սարկաւագունք ի յետուստ սեղանոյն խնկարկելով փոխանակեն զտեղիսն, ապա մին ընդ աջակողմն եւ միւսն ընդ ձախակողմն ըստ վերնոյն կարգաւ խնկարկելով՝ գան յատեան բեմի, ի միասին առ ժողովուրդն, զատանին եւ դէմ առ դէմ միմեանց խնկարկելով երիցս, խոնարհին միմեանց եւ միաւորելով դարձեալ առ ժողովուրդն խնկարկեն. ապա ի միմեանց զատուցեալ, մին ընդ աջ եւ միւսն ընդ ձախ կողմանս կարգաւ խնկարկելով՝ կան յիւրաքանչիւր տեղիս:

**Խնկարկութիւն** ի Հաւատամք եւ ի Ս. Հո-

զկն եւ ի հաւատամք 'ի մի միայնն։ Իսկ որք ասերին իջուցանէ զԱւետարանն եւ տայ ժամարարին ի համբոյր, մոմակալք երթան առ ընծայն, ի խոնարհ ունելով զմոմսն։ Իսկ մեք փառաւորեսցուքին երբ ժամարարն ասէ․ Երկրպագելով խնկարկութեամբ նախասարկաւագին երկրպագէ եւ ինքն սարկաւագն ընդ ժամարարին, եւ ապա ի յետուստ սեղանոյն գայ դնէ զԱւետարանն յաջն կոյս սեղանոյն առ ատրճանաւն։ Խաղաղութեամբ քով բազկատարած, եւ ի Տէր Աստուած օրհնեսցէին ժամարարն խաչակնքէ զժողովուրդն։ Հետեւակ սարկաւագն առնու զթագն եւ դնէ առաջի Աւետարանին։ Ժամարարն հանէ զհողաթափն։ Ջգի վարագոյրն եթէ օրն հանդիսաւոր է եւ ժամարարն եպիսկոպոս կամ քարոզիչ, առնու Նոր շուրջառ։ Եպիսկոպոսին ի բաց հանել զթագն, զեմիփորոնն, զարտախուրակսն, զմատանին եւ զպնակին։ Ցարտաքուստ զՄի որ յերախայիցն երգել։ Սարկաւագունք ապա պար առեալ բոլորին մերձ առ ընծայն։ Նախասարկաւագն վերս բերողին տայ զբուրվառն։

---

## ՎԵՐԱԲԵՐՈՒՄՆ

*Ի բանալ վարագուրին վերաբերողն գոչէ.* Սաղմոս ասացէք։ *Ի սկսանել* Սրբասացութեանն *խնկարկէ ընծային ինն անգամ, գայ առ ժամարարն ի համբոյր աջոյն եւ ասէ,* Մեղայ Աստուծոյ, *արձակէ զնա ժամարարն ասելով.* Աստուած թողութիւն շնորհեսցէ։ *Գայ կրկին յընծայարան, խոնարհի յերկրպագութիւն, եւ ասելով ի Թիւ.* Յարեւուն եհար զխորանն իւր, *առնու զընծայն եւ բարձրացուցանէ ասելով* Եւ ինքն որպէս փեսայ զի ելանէ յառագաստէ իւրմէ *եւ երթայ յառաջ զկնի Նախասարկաւագին եւ մոմակալաց ասելով.* Եւ ցնծայ որպէս հսկայ յընթանալ իւրում, *խնկարկութիւն եւ ձայնք քշոցաց՝ անընդհատ։ Գան յարեւելս ի յետուստ սեղանոյն. վերաբերողն ի Թիւ* Ճանապարհ արարէք. *ի հարաւ,* Աստուած ի հարաւոյ։ *Նախասարկաւագն տայ զբուրվառն ժամարարին, որ նախ խնկարկէ սեղանոյն ինն անգամ, եւ ապա համբուրէ զսեղանն եւ*

դառնայ ընծային խնկարկէ ինն անգամ, եւ յետ խնկարկութեան տայ զբուրվառն սարկաւագին, որ կայ ընդ աջակողմն իւր. վերաբերողն եւ ժամարարն տուն առ տուն ասեն զՀամբարձէքն, ի Թիւ՝ ի լուր աւուրս, ի ձայն՝ ի հանգիստաւոր աւուրս եւ ի տօնս տէրունիս: Ապա ժամարարն առնու զընծայն եւ յետ խաչակնքելով բարձրացուցանելոյ ի տես ժողովրդեան, դառնայ դայ ի սեղան, դարձեալ առնու զբուրվառն եւ խնկարկէ ընծային եւ տայ զբուրվառն նախասարկաւագին, եւ դառնալով յաջակողմն լուանայ զմատունսն ի ձեռն վերաբերող սարկաւագին. իսկ մոմակալք երթան ի պահարան:

---

## ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՎԵՐԱԲԵՐՈՒՄՆ

Եւ եթէ հանդիսաւոր օր լինի, եւ զխորհուրդն վերաբերել կամիցիս, ըստ Շնորհալւոյն, քահանայ մի սարկաւագօք եւ դպրօք երթայ եւ առնու զընծայն, եւ սարկաւագքն առաջի եւ դպիրքն զկնի լապտերօք եւ քշո-

ցօք եւ սարկաւագն բուրվառաւ կան . ապա վերաբերողն բարձր ձայնիւ ի Թիւ Ցարեւու Եհար . դպիրք երգելով Որք զքրովբէիցն , գան յարեւելից կողմն . վերաբերողն ձայնէ ի Թիւ Ճանապարհ արարէք . դպիրք Եւ կենդանարար . գան ի հարաւակողմն , վերաբերողն ի ձայն բարձր . Աստուած ի հարաւոյ . դպիրք Զամենայն զկենցաղականս : Եւ գան յաստիճան խորանին եւ քահանայն որ ունի զընծայն ի ձեռն , ասասցէ բարձր ձայնիւ . Համբարձէք : Ժամարարն գայ ընդ առաջ , խընկարկէ եւ հարցանէ . Ո՞վ է սա . դպիրք Որպէս զի թագաւորն . վերաբերողն Համբարձէք . Ժամարարն Ո՞վ է սա . դպիրք Եւ զհրեշտակացն . վերաբերողն Համբարձէք . Ժամարարն Ո՞վ է սա եւ առնու ի ձեռացն եւ հանէ ի սեղան եւ երբ երգն վճարի , սարկաւագն քարոզէ Եւ եւս խաղաղութեան :

Ընդ ամփոփմանն տանել զընծայն, սակայն ի չորեսին կողմանս սեղանս դնել օրէն չէ : Կիսազգեստ լիցի վերաբերողն եւ քահանայ, խնկարկութիւնն ի ձեռն երկուց սար-

կաւագաց, ընդհատմամբ։ Զայնք քշոցաց, անընդհատ, այլ մեղմօրէն, չորեքին մոմակալք եւ խաչվառք շուրջ զընծայիւն։ Ի վերաբերելն ի մէջ եկեղեցւոյ կամ ի դասու հարկ է դպրացն երթալ յառաջոյ մոմ ի ձեռին։

---

## ՊԱՏԱՐԱԳ

Ժամարարն խաչակնքէ զընծայն ի Դեղ թողութիւն մեղաց պարգեւեսցին եւ բանայ կիսովին զընծայն եւ ի ձայնել սարկաւագին Աստուծոյ երկրպագեսցուք․ համբուրէ զընծայն ասելով Օրհնեալ է յայտնութիւնն Քրիստոսի․ եւ կայ քօղնտի յաջակողմն ձեռնամած, զաչսն յընծայն յառելով․ Նախասարկաւագն նախ համբուրէ զսեղանն եւ զաջ ժամարարին, որ ասէ Ողջոյն, Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ, որում պատասխանելով սարկաւագին Օրհնեալ է յայտնութիւնն Քրիստոսի․ ապա ձայնէ Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան․ եւ իջանէ ընդ աջակող

մեան սատիճանին առանց խնկարկութեան եւ գայ առ եպիսկոպոսն, որ ի դասու կայ պար առեալ ի քահանայից։ Խնկարկէ եւ համբուրէ զաջ եպիսկոպոսին, զոր դնէ ի վերայ բուրվառին, եւ ասէ ցեպիսկոպոսն. Ողջոյն, Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ։ Եպիսկոպոսն տայ զողջոյնն երիցագոյն երկու քահանայից, որ ընդ աջմէն եւ ընդ ահեկէն։ Քահանայք միմեանց, դպիրք եւ ժողովուրդն ի քահանայից առնլով զողջոյնն համբուրեսցեն զմիմեանս։ Նախասարկաւագն առանց խնկարկութեան ելանէ ի բեմ ընդ սատիճանին ճախակողմեան։ Ժամարարն աքողէ զընծայն երկրպագելով, յետ երգոյն սարկաւագունք առանց քշոցի գան ի ժամարարէ առնուն զողջոյնն։ Յերգել դպրաց Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ անընդհատ ձայնք քշոցաց եւ ցընծղայից։ Ժամարարն ձեռնամած Արժան է ստուգապէս, բազկատարած Սուրբ, սուրբ, սուրբ ես ճշմարտապէս. յերգել դըպրաց ուրբն, ձայնք քշոցաց եւ ցընծղայից։

---

# ԽՆԿԱՐԿՈՒԹԻՒՆ

## Ի Սուրբ սուրբին եւ ի Հայր մերին

Դէպ ուղիղ կայ նախասարկաւագն ի սեղանն, դպիրք Սուրբ․ երիցս խնկարկութեամբ խոնարհութիւն, այսպէս երկիցս եւս, ընդ-հատմամբ. դպիրք Տէր զօրութեանց. ի յետուստ գնալով սեղանոյն գայ յաջակողմն սեղանոյն, (տես յերես 36)։

Ժամարարն բանայ զընծայն եւ առնու զնչխարն, յաղօթելն Առեալ զ՚հացն դնէ յափն ձախոյ ձեռին, Օրհնեաց խաչակնքէ զնչխարն, Գոհացաւ բազկատարած, Եբեկ զձեռ բեկման առնէ ի չորեսին ծայրս նըշխարին, յՍւ եւ իւրոցին երկոքին ձեռամբ ունի զնչխարն ի վերայ մաղզմային։ Խնկարկութիւն, երբ ժամարարն փոքր ինչ բարձրացուցեալ՝ Այս է մարմին իմ եւ կամ Արիւն իմ ասէ։ Յետ Առէք կերէքին ժամարարն ըզնչխարն մաղզմայիւն հանդերձ դնէ ի վերայ

բշխումնին, Նոյնպէս եւ զբաժակն առեալ առնու զսկիհն ի ձեռս, Օրհնեայ խաչալինքէ, Գոհացաւ բազկատարած եւ երկոքին ձեռամբ յեարբբին հուպ ի բերան տանի զսկիհն։ Ցեւ եւո իւրոցին դնէ ի սեղանն։ Ցետ Արբէք ի սմանէին զնշխարն մաղզմայիւն հանդերձ դնելով ի վերայ սկիհին՝ սքողէ զընծայն, եւ ի Ցառաջ բերեալին ունի զընծայն, զոր ի Զքոյս ի քոյոց քեզին բարձրացուցանէ փոքր ինչ։ Դպիրք Ցամենայնի օրհնեալ․ Նախասարկաւագն դէպ ուղիղ խնկարկէ, երիցս, ընդհատմամբ․ Նոյնպէս ի Գովեմք զքեզն եւ ի Գոհանամք զքեզն։ Նախասարկաւագն Աստուծոյ երկրպագեսցուք․ եւ ընդ ժամարարին երկրպագեալ սեղանոյն կայ առ ընթեր ժամարարին, որ հանէ զբշխումն ի բաց, յափին ձախ ձեռին առեալ զնշխարն մաղզմայիւ հանդերձ, սարկաւագն կիսաձեւ խընկարկութեամբ Օրհնեա՝ Տէր․ ժամարարն խաչալինքէ զհացն Որով զհացս, երիցս այսպէս։ Ապա զմաղզմայն նշխարաւն եդեալ ի վերայ բշխումնին, առնու զսկիհն եւ խաչալինքէ ա-

սելով․ Որով զգինիս․ այսպէս երիցս։ Ապա զմաղզմայն եդեալ ի վերայ սկիհին ձախ ձեռամբն ունի զսկիհն եւ աջովն օրհնէ, Որով զհացս եւ զգինիս ասելով երիցս։ Յետոյ երկրպագեալ սքողէ զընծայն։

Հոգի Աստուծոյ յերգն ձայնք քշոցաց եւ ցնծղայից։ Խնկարկութիւն սեղանոյն նախ, ապա դառնալով սարկաւագացկարգաւ, փոքր սեղանոյն, դրանն պահարանի, քահանայից քայլ առ քայլ, յատեան բեմի դպրաց եւ ժողովրդեան, դարձեալ կարգաւ քահանայից աջակողմեան, դրանն պահարանի, փոքր սեղանին, սարկաւագաց, ընծային, եւ կայ առաջի սեղանոյն, ի գլուխ սարկաւագաց, ընդ յաջակողմն։ Ի զոյգ բուրվառի եւս այսպէս։ Զեռնամած Առաքելոց սրբոց․ յեղիցի յիշատակս․ խնկարկութիւն, նոյնպէս երբ նախասարկաւագն ի ձայն բարձր Ընդհանուր ամենայն հաւատացելոց։ Ի հանդիսաւոր աւուրս դաս առ դաս․ ապա երկրպագելով սեղանոյն եւ համբուրելով զաջ ժամարարին ասեն ի ծածուկ․ Յիշեսջիր զմեզ առաջի

անմահ զառինն Աստուծոյ եւ առնուն պատասխանի ի ժամարարէն Յիշեալ լիջիք ։ Վերաբերող սարկաւագն սկսանի Գոհութիւն եւ ի ձայնելն Եւ քահանայիս որ զպատարագս մատուցանէ ․ խնկարկութիւն ժամարարին , եւ ի Շնորհ յառաջիկայ ժողովրդեանսին , առ ժողովուրդն ։ Ի Հայր մերի խնկարկութիւն (տես յերես 36 , եթէ զոյգ է տես յերես 37) ։

Ժամարարն խոնարհելով յաջ ընծային ի համբոյր ողջունի , ասէ ․ Քրիստոսիւ , նոյնպէս եւ ի ձախն Յիսուսիւ , ի գագաթն Տէրամբ մերով ։ Ապա սարկաւագն ․ի ձայն բարձր Պրօսխումէ ։ Ժամարարն յետ բանալոյ զընծայն՝ բարձրացուցանէ զմարմինն ակներեւ ժողովրդեան , ասելով ի ձայն բարձր ․ Ի սրբութիւն սրբոց ․ խնկարկութիւն առ խորհուրդն ․ դպիրք Միայն սուրբ , միայն տէր ի բարձր ․ Յիսուս Քրիստոս ․ ժամարարն զբաժակն բարձրացուցանէ ․ խնկարկութիւն առ խորհուրդն ։ Յասել ժամարարին Օրհնեալ Հայր սուրբ , Որդիդ սուրբ ; Հոգիդ սուրբ , Օրհնութիւն եւ փառք ․ տեառնագրէ զանձն

*խնկարկութեամբ սարկաւագին ։ Դպիրք* Ա-մէն ․ Հայր սուրբ ․ *խնկարկութիւն երից երես առ սեղան, նոյն եւ* յՈրդիդ սուրբ եւ *ի* Հոգիդ սուրբ*ին ․ իսկ* յօրհնութիւն եւ փառք Հօր*ին անձայն խնկարկութիւն այսինքն շարժելով եւ անընդհատ* ց*Ա*մէն*։ Իսկ ժամարարն երկրպագելով դնէ զմաղզմայն եւ մարմինն ողջ թանայ ի բաժակի ․* ի Սուրբ ի սուրբ պատուական մարմնոյ եւ յարեանէ Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի ճաշակեսցուք սրբութեամբ որ իջեալ ի յերկնից բաշխի ի միջի մերում *դառնայ եւ յառաջանայ սակաւ ինչ դէպ յատեան բեմին եւ ասէ ․* Սա է կեանք, յոյս, յարութիւն, քաւութիւն եւ թողութիւն մեղաց ․ *խնկարկութիւն առ ընծայն ․ դառնայ ի սեղան շարունակելով ․* Սաղմոս ասացէք ․ *զկնի* Տէր ողորմեա*յին նախասարկաւագն ի թիւ* Սաղմոս ասացէք Տեառն Աստուծոյ մերում դպիրք ․ *խնկարկութիւն առ դպիրս*, Ձայնիւ քաղցրութեամբ զերգս հոգեւորս, զի սմա վայելէ ․ *խնկարկութիւն առ սեղանն*, Սաղմոս եւ օրհնու-

քիւն, ալէլուք եւ երգք հոգեւորք, պաշտօնեայք *խնկարկութիւն առ Դպիրս*, Հանդերձ երգօք։ *Դպիրք* Քրիստոս պատարագեալ. *Նախատարկաւագն մոմ ի ձեռին ժամօրհնողին բերէ զմասն եւ տայ*. Եւ եւս խաղաղութեան. *ժամօրհնողն յետ օրհնութեան բաշխէ ի մասունս եւ սարկաւագն տանի տայ քահանայից եւ դպրաց ի դասու եւ ի բեմի։ Նշխար մասինն եպիսկոպոսին է, իսկ բաշխումն մասին ի գաւթի՝ հետեւակ քահանային է։*

*Ժամարարն զկնի* Խոստովանիմին *բեկանէ զՍ. մարմինն նախ յերկուս վերուստ ի վայր, ապա զմիմեամբք զետեղելով դարձեալ բեկանէ, եւ զչորեսին մասունս արկանէ ի բաժակն ասելով*. Լրումն Հոգւոյն Սրբոյ։ *Ապա զմի մասն առեալ աղօթէ*. Հայր Սուրբ. *յաւարտն Հա*ւատով հաւատամին՝ *ճաշակէ զայն մասն որ ի ձեռին, ասելով*. Հաւատով ճաշակեմ. *ապա զարիւնն ըմպէ ասելով զմիւս տունն, ապա զմին ի մասանց, որ ի բաժակի, առնլով ասէ*. Մարմին քո եւ արիւն. *Եթէ լցեն ի ծերունի քահանայից եւ ի սարկաւագաց արժանա-*

ւորք հաղորդէ զնոսա։ Նախասարկաւագն ի ձայն բարձր. Երկիւղիւ եւ հաւատով յառաջ մատիք եւ սրբութեամբ հաղորդեցարուք։ Ժամարարն առեալ զընծայն դառնայ առ ժողովուրդն եւ ի ծունր իջեալ, ի բեմէ հաղորդէ, որք արժանաւորք են, եւ հաղորդին խաչակնքելով եւ Մեղայ Աստուծոյ. ասելով. վերաբերող սարկաւագն դաստառակաւ ունի զսկիհն ի ձախմէ ժամարարին կալով ի ծունր, նոյնպէս դպիրք երկու ի ծունր՝ ունելով զծայրից միոյ մեծի սպիտակ գողնոցի։ Իսկ մոմակալք դէմ առ դէմ դառնան. առ ընծայն, ապա դպիրք Աստուած մեր եւ Տէր. ժամարարն յառնկայս զսկիհն եւ զմարմինն ի ձեռին կեցո՝ Տէր, եւ դառնալով ի սեղանն անդ ճաշակէ զմնացեալսն երիցս անգամ, ըստ երից տանց Գոհանամք զքեն՝ Հայր ամենակալ։ Տայ զխաղաղութիւնն ի ծածուկ ասելով. Անքննելի, ապա լուայ զձեռս ի ձեռն վերաբերող սարկաւագին, որ ասէ. Յիշեա՝ Տէր, զպաշտօնեայս քո....։ Բարեբար։ Ծա՛կէ զընծայն եւդնէ ի գլուխ իւր զսաղաւարտ

եւ առնու զԱւետարանն։ Եթէ եպիսկոպոս է, դնէ զԹագն, առնու զգաւազան եւ զխաչ, իսկ զԱւետարանն ի բեմին ունին երկու դպիրք։ Ժամարարն յետ երկրպագելոյ՝ ասէ ի ձայն. Որ օրհնես զայնոսիկ. իջանէ յատեան դասու ընդ նախասարկաւագին եւ ընդ մոմակալս, եւ ընթեռնու զԱւետարանն։ Ապա Պահպանիչ. Օրհնեալ եղերուք եւ տայ համբուրել զԱւետարանն դպրաց եւ ժողովրդեան եւ դառնայ ընդ պաշտօնեայսն ի բեմ եւ երկրպագեալ երիցս մտանէ ի ժամատունըն։ Իսկ եթէ ժամարարն եպիսկոպոս է, ի բեմի այս ամենայն, ապա Թափորաւ մուտք ի ժամատունն։

## ԽԱՉԱՀԱՆԳԻՍՏ

Եթէ խաչահանգստեան պէտք իցէ, սարկաւագն Եւ Եւս խաղաղութեան. ի ձայն. ժամարարն. Օրհնութիւն. դպիրք Զօրութիւն սուրբ խաչի քո, Քրիստոս։ Աստուած մարդասէր։ Որ եկիր ի փրկութիւն եւն։ Ժամա-

բարն եւ քահանայք օրհնեն զջուրն, խաչիւ Աւետարանաւ եւ մասամբ սրբոց։ Այս սարկաւագն վասն հիւանդաց. ժամարարն փարատեա. եւ արձակէ զժողովուրդն։

---

## ԱՒԱԳ—ՍԵՂԱՆ

Խաչկալն ի ձեւ կաթողիկեայ, վեղարաձեւ, չորեքին սեամբք, աստիճանք վեց կամ երեք, որոց ի վերայ ճերմակ ծածկոց, մաքուր։ Մի եւ եթ պատկեր այն է Յիսուս մանուկն ի գիրկս Տիրամօրն, գեղանկար է կտաւի։ Աշտանակք կերոնաձեւ երկոտասան մեղրամոմաւ, զի պիղծ են առաջի Տեառն ճրագունն եւ ճարպն. ի մէջի աշտանակաց քառաթեւ սուրբ խաչ արծաթեայ, որոյ առաջի տապանակ գմբեթաձեւ կաթողիկէիւ, որոյ ի մէջի Սրբութիւնն սրբոց սրբատիպաւ արծաթեայ, հանապազ, բաց յաւուրցն, յորս ըստ տօնացուցի դնի ի բազմոցի։ Ի վերայ վէմքարի Աւետարան արծաթապատ նկարէ որոյ յաջն ու ձախ աշտանակք երկու մի

րիկ, վառ ի ժամերգութիւնս միշտ. գոգնոց մաքուր՝ զարդարուն ըստ վայելչութեան աւուրն։

Ի հանդիսաւոր աւուրս զարդարել զսեղանն բնական ծաղկօք, աշտանակօք, Աւետարանօք, Խաչիւք, բայց երկոտանիցն մոմեղինաց կարգ միշտ ի վեր։

Մշտավառ կանթեղ առաջի սեղանոյն։ Վարագոյրն մեծ՝ միակտուր։ Ի խորհրդանոցի չիչ բաժակի, Լի անապակ գինեաւ, անդնոյնպէս եւ նաշխհն։ Սպաս նշխարի խաչելութեան պատկերաւ եւ եթ. միշտ միջակ մեծութեամբ եւ չափաւոր բարակութեամբ։ զՃաշուն քաղելով՝ յառաւօտու նշխար՝ գործել եւ թարմ հանել ի սեղան։ Ի ձախակողմեանն խորհրդանոցի կոնք, մաքուր, եւ խորհրդատետր։ Վարագոյրք խորհրդանոցացն ըստ պատշաճի աւուրն, վայելչագեղ։

Եթէ կան փոքր խորանք, մի խաչ յասպիճանսն, երկու աշտանակ եւ ի միջի Աւետարան։

Ի բեմի ժամագիրք ատենի, ասընթեր ժամագրքի Աւետարան, փոքրիկ գրակալաւ։

---

# ԱՆՕԹՔ ԵՒ ԿԱՀՔ Ի ԲԵՄԻ

1 · Խաչ Աւագ Խորանի արծաթի
2 · Սկիհ » » »
3 · Սրբատուփ »
4 · Աւետարան »
5 · Միւռոնակիր (աղաւնի) »
6 · Բուրվառ »
7 · Կանթեղ Աւագ խորանի »
8 · Աշտանակք ըստ կամի
9 · Քշոցք » »
10 · Գաւազան » »
11 · Ծաղկամանք » »
12 · Խնկաման » »
13 · Կոնք » »
14 · Ծիչ բաժակի » »
15 · Ափսէ » »

Այս անօթք են ի խորանի եւ ի բեմի։

1 · Խաչ յԱւագ խորանի մշտակայ, վ —
ռաթեւ արծաթեայ։ Իսկ այլ խաչք հա՛ ·–

չաւոր կամ քառաթեւ առ ի զարդ եւ եթ ի հանդիսաւոր աւուրս ։

2 · Սկիհ, ի պատարագի, արծաթեայ ։

3 · Սրբատուփ թիւն ըստ պիտոյից ։

4 · Միւռոնակիր » » » ։

5 · Բուրվառ, արծաթեայ ի պատարագի, երկոտասան բոժոժիւք, իսկ այլքն ի ժամերգութիւնս եւ ի գանձանակս ։

6 · Կանդեղ, արծաթեայ՝ ի խորանն, մըշտավառ, իսկ այլքն կախեցին կարգաւ պառաստաղէ, կարգ մի ըստ եզերաց բեմին, եւ դէմ առ դէմ, մի մի կարգ եւս յեկեղեցւոջ առ սեամբքն ։

7 · Աշտանակք տեսակքն ըստ կամի, թիւն ըստ պիտոյից ։

8 · Ջահք տեսակքն ըստ կամի, բայց թըւով առ նուազն մինչ երկու, հրեշտականըկար եւ բոժոժազարդ, կախեցին զորմոցն խորանին դէմ առ դէմ ։

9 · Գաւազան ըստ կամի, օձանկար, ծաղկեայն եւ խաչապսակն ոլորաձեւ՝ եպիսկոպոսական է ։

10 · Ծաղկամանք ըստ պիտոյից, մի՛ ապակեայ գոց, այլ բաց, ծաղիկք բնական։

11 · Խնկաման ըստ պիտոյից։

12 · Կոնք ի լուացումն ժամարարին եւ եթ։

13 · Շիշ բաժակի, փոքր եւ սպիտակ։

14 · Ամփսէ, փոքրիկ տախտակ ծոպաւոր պաստառակալեալ առ ի պէտս խաչին եպիսկոպոսի եւ նշխարի եւ մասի։

---

## ԱՆՕԹՔ ԵՒ ԿԱՀՔ

( Այլ եւ այլք )

1 · Ջահք
2 · Ծնծղայք—շարածնծղայ
3 · Զանգակք կամ ժամհար
4 · Ճաշոց գիրք
5 · Աւետարան ճաշու
6 · Խորհրդատետր
7 · Ժամագիրք
8 · Սաղմոս
9 · Տարական
10 · Կարգացոյց

11․ Գրակալք
12․ Մոմակալք
13․ Խաչվառ
14․ Ամպհովանի
15․ Զգեստք, (ժամարարի, ուրար, շապիկ)
16․ Աւել, բանալիք։

Այս են անօթք եւ կահք եկեղեցւոյ․

1․ Զահ մշտակախ ընդ գմբեթաւ, իսկ այլքն ընդ առաստաղաւ ատենին բեմի եւ դասու եւ ի միջի սեանցն եկեղեցւոյ։

2․ Ծնծղայ․ Թիւն առ նուազն երկու, ի հանդիսաւոր աւուրս յերգսն եւ յալէլուս, եւ ի շարականս Հոգեգալստեան, յՕրհնութիւնս եւ ի «Փառք ի բարձունս»ն եւլն․

3․ Զանգակ․ ի գաւթի մեծ, ի սկիզբն ժամերգութեան, ի պատարագի աւուրս; երկիցս ի «Փառք ի բարձունս» եւ ի «Խորհուրդ խորին»ն տալ ի հնչիւն անընդհատ։

4․ Ճաշոց գիրք գէթ մի։

5․ Ճաշու Աւետարան․ յերկոսին կողքս խաչանկար գոնէ։

6. Խորհրդատետր յերկոսին կողքս խաչանկար միայն։

7. Ժամագիրք մին յատենի, երկու դըպրաց (փոքր)։

8. Սաղմոս ըստ կամի։

9. Շարական. երկու ձայնքաղ, իսկ այլքն փոքր, ըստ կամի։

10. Կարգացոյց ամենեցուն պաշտօնէից ի պէտս, թիւն ըստ թուոյ պաշտօնէից։

11. Գրակալք. մին ատենի, մեծ. երկու շարականաց, փոքր, եւ երկու վասն ժամագրքին ատենի եւ Աւետարանին, փոքրիկ։

12. Մոմակալք. թիւն միշտ երկու, ի հանդիսաւոր աւուրս չորք. մի՛ նչխուն կամ զարդարուն։

13 Խաչվառ դրօշակաւոր եւ խաչապսակ, ի հանդիսաւոր աւուրս ընդ մոմակալս։

14. Ամպհովանի. ի հանդիսաւոր վերաբերումն միայն։

15. Զգեստք պատարագի. մի աղտոտ եւ մի պատառատուն կամ կարկտուն։ Թա խաչապսակ գմբեթաձեւ, վարշամակն (մ

կաս) վայելուչ, չապիկն սպիտակ, փորուրարն խաչանիշ, Թաշկինակն եւ բազպանն նկարէն, գօտի արծաթի խաչանկար, չուրջառն ծաղկեայ։ Թագն քահանայական կամ եպիսկոպոսական եւ վակասն ի հանդիսաւոր տօնս ադամանդակուռ եւ մանգրտայեռ, նկարագեղ պատկերաւ Յարութեան կամ Խաչելութեան։

Ուրարն սարկաւագաց է, չապիկն դըպրաց, ըստ պատշաճի աւուրց սպիտակ կամ գոյնզգոյն են.

Այս ամենայն անօթք եւ կահք նախ օրհնին եւ կամ օծանին ըստ Մաշտոցի եւ ապա տէրունի լինին։



# ԺԱՄԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ

## ԳԻՇԵՐ-ԺԱՄ

Տէր զի բազում· աշակերտի դասուն է։
Փառք Հօր եւ յիշեսցուք· ձայնին է։
Զարթուցեալքս· աշակերտի դասուն է։
Կեցո· » » »
Կանոնագլուխ· ձայնին է։
Սաղմոսն Աւետարանի· » »
Հոգեզգալուստք· » »
Հանգստեան երգ· » »
Հետեւակ օրհնութիւն· » »
Օրհնութիւն· աշակերտի դասուն է։
Քարոզ եւ տէր ողորմեա· » » »
Աղօթք· ձայնին է կամ հարկեւոր հիւրին։
Ալէլուք եւ Թագաւորք· ձայնին է։

---

# ԱՌԱՒՕՏԵԱՆ-ԺԱՄ

Փոխ եւ Հարց․ աշակերտի դասուն է։
Եկեալքս․ » » »
Մեծացուսցէ․ ձայնին է։
Քարոզ․ աշակերտի դասուն է։
Տէր ողորմեա եւ վասն սուրբ․ ձայնին է։
Ընկալ տէր կամ դու ես Թագաւոր․ ձայնին է կամ ժամարարին․
Եղիցի անուն տեառն․ ձայնին է։
Արի առաջին․ աշակերտի դասուն է։
Փառք յարութեան․ ձայնին է։
Ամենակեցոյց․ ժամարարին է։
Ողորմեա․ ձայնին է։
Երկրպագեմք․ աշակերտի դասուն է։
Տէր երկնից․ » » »
Փառք ի բարձունս․ » » »
Եւ յամենայն ժամ․ ձայնին է։
Քարոզ կամ գանձ․ աշակերտի դասունն է։
Տէր ողորմեա․ ձայնին է։
Լուր մեզ տէր․ աշակերտի ձայնին է։

Սուրբ Աստուած․ ձայնին է։
Քարոզ․ » »
Գիրք եւ շարական եթէ կայ, աշակերտի
դասուն է։
Աւետարան․ ձայնին է։
Օրհնեցէք փոխ․ » »
Քարոզ․ աշակերտի դասուն է։
Սուրբ եւ տէր․ » » »
կամ հետեւակ ժամարարին է։
Տէր ամենակալ․ աշակերտի դասուն է։
Քարոզ․ » » »
Աղօթք․ ձայնին է։
Միրեցի․ » »
Երգ եւ կեցո․ » »
Աղօթք․ » »

---

## ԱՐԵՒԱԳԱԼ

Ի նա օրհնեսցի․ աշակերտի դասուն է։
Երգ․ ձայնին է։
Քարոզ․ աշակերտի դասուն
Աղօթք․ ձայնին է։

| | |
|---|---|
| Աղաղակեցէք. | ձայնին է։ |
| Երգ. | » » |
| Քարոզ. | աշակերտի դասուն է։ |
| Աղօթք. | ձայնին է։ |
| Փոխ. | աշակերտի դասուն է։ |
| Լոյս. | » » » |
| Քարոզ. | ձայնին է։ |
| Աղօթք. | աշակերտի դասուն է։ |
| Փոխ. | ձայնին է։ |
| Երգ. | » » |
| Քարոզ. | աշակերտի դասուն է։ |
| Աղօթք. | ձայնին է։ |

---

## ՃԱՇՈՒ

| | |
|---|---|
| Ողորմեա Ա. ի Թիւ. միշտ. | ձայնին է։ |
| Երգ. | » » |
| Քարոզ. | » » |
| Աղօթք. | աշակերտի դասուն է։ |
| Քարոզ խնդրեսցուք | » » » |
| Աղօթք. | ձայնին կամ ժամարարին է։ |
| Ցիշեա տէր. | աշակերտի դասուն է։ |

Աղօթք. ձայնին կամ ժամարարին է։
Փոխ. ձայնին է։
Քարոզ. » »
Աղօթք. աշակերտի դասուն է։

Ողորմեա Բ. աշակերտի դասուն է փոխ առ փոխ։
Երգ. աշակերտի դասուն է։
Քարոզ. » » »
Աղօթք. ձայնին է։
Քարոզ. » »
Աղօթք. աշակերտի դասուն է։
Յիշեա. ձայնին է։
Աղօթք. աշակերտի դասուն է։
Փոխ. » » »
Քարոզ. » » »
Աղօթք. ձայնին է։

Ողորմեա Գ. ձայնին է։
Երգ. » »
Քարոզ. » »
Աղօթք. աշակերտի դասուն

| | |
|---|---|
| Երգ. | ձայնին է։ |
| Քարոզ. | աշակերտի դասուն է։ |
| Աղօթք. | ձայնին է։ |
| Յիշեա. | աշակերտի դասուն է։ |
| Աղօթք. | ձայնին է։ |
| Փոխ. | » » |
| Քարոզ. | » » |
| Հանգստեան շարական | » » |
| Աղօթք. | աշակերտի դասուն է։ |
| Ժամամուտ. | ձայնին է։ |
| Քարոզ | աշակերտի դասուն է։ |
| Փոխ եւ շարական. | ձայնին է։ |
| Սուրբ Աստուած. | » » |
| Քարոզ. | աշակերտի դասուն է։ |
| Գիրք. | » » » |
| Աւետարան. | ձայնին է։ |
| Քարոզ. | աշակերտի դասուն է։ |
| Աղօթք. | ձայնին է։ |
| Միայն սուրբ. | աշակերտի դասուն է |

եւ սարկաւագին։

---

# ԵՐԵԿՈՑԵԱՆ ԺԱՄ

Քարոզ. Ձայնին է։
Փոխ. » »
Քարոզ. աշակերտի դասուն է։
Ապրեցո. » » »
Լոյսզուարթ. » » »
Եկեալքս. Ձայնին է։
Մեսեդի. » »
Քարոզ եւ տէր ողորմեա. աշակերտի դասուն է։
Աղօթք. Ձայնին է կամ ժամարարին։
Սուրբ Աստուած. » »
Փոխ եւ շարական. » »
Քարոզ. աշակերտի դասուն է։
Աղօթք. » » »
կամ հետեւակ ժամարարին։
Փոխ. Ձայնին է։
Քարոզ. աշակերտի դասուն է։
Աղօթք. Ձայնին է։
Յիշեա. » »
Աղօթք. » »
Աստ օրհնեցէք. » »

Խնդրեսցուք ·   աշակերտի դասուն է ։
Կեցո ·   ձայնիւն է ։
Աղօթք ·   »   »
Ի Նախատօնակս Օրհնութիւնն եւ Հարցն աշակերտի դասուն է ։

---

## ԽԱՂԱՂԱԿԱՆ

Քարոզ ·   աշակերտի դասուն է ։
Փոխ ·   ձայնիւն է ։
Երգ ·   »   »
Քարոզ ·   »   »
Աղօթք ·   աշակերտի դասուն է ։
Փոխ.   ձայնիւն է ։
Երգ ·   »   »
Քարոզ.   աշակերտի դասուն է ։
Աղօթք.   ձայնիւն է ։
Ամբիծքն   աշակերտի դասուն է ։
Երգ ·   »   »   »
Քարոզ ·   ձայնիւն է ։
Աղօթք.   աշակերտի դասուն է ։

---

## ՀԱՆԳՍՏԵԱՆ ԺԱՄ

Քարոզ․ ձայնին է։
Փոխ․ » »
Քարոզ․ աշակերտի դասուն է։
Աղօթք․ ձայնին է կամ ժամարարին։
Սաղմոս․ ձայնին է։
Աւետարան » » կամ ժամարարին։
Գոհացականս․ ձայնին է կամ ժամարարին։
Նարեկ․ աշակերտի դասուն է։
Հաւատով․ ձայնին է։
Քարոզ․ աշակերտի դասուն է։
Աղօթք․ ձայնին է։
Փառք քեզ՝ Տէր․ ժամարարին է կամ հարկաւոր հիւրին։



# ՊԱՐՏԱՑՈՅՑ

# ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ԴԱՍՈՒ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ

*Ա. Կանխել միշտ ի պաշտօն Աստուծոյ, ըստ ժամակարգութեան Հայաստանեայց Եկեղեցւոյ:*

*Բ. Մի՛ անհրաման յաւագերիցուէն թողուլ զժամու պաշտօնն եւ մեկնել:*

*Գ. Ծանուցանել նախ եւ առնուլ հրաման յԱւագերիցուէն, եթէ հարկ ինչ դիպեսցի բացակայութեան:*

*Դ. Պատկառանօք եւ երկիւղածութեամբ կատարել զպաշտամունսն, ըստ Ժամագրոց եւ Տօնացուցի.*

*Ե. Միաձայն երգել եւ լռին ունկն դնել ընթերցուածոց:*

- *Մի՛ շտապաւ կամ ծեծեքելով ընթեռւլ զգիրս:*
- *Յաւանդատան առնուլ փիլոն եւ հո-*

զաթափ, եւ յետ երից երկրպագութեան առաջի բեմին եւ խոնարհելոյ յողջոյն եպիսկոպոսին, կալ ի դասու, երիցութեան կարգու ըստ ձեռնադրութեան։

Ը. Բացաւ գլխով եւ երկիւղածութեամբ կալ ի ժամ պաշտաման եւ յաղօթս։

Թ. Որ անզգոյշն է յեկեղեցւոջ ի բարս եւ ի վարս, խրատեսցի յաւագերիցուէն, եթէ անսաստ կացցէ, յանդիմանեսցի յեպիսկոպոսէն։

Ժ. Որ հեզգանայ ի պաշտաման, զրկեսցի ի բաժնէ։

ԺԱ. Զգանձանակն խնկարկութեամբ տանել առ ժողովուրդն, եւ մի ծիծաղերես կամ բարձրաձայն մաղթանօք։

ԺԲ. Զպաշտօն սարկաւագութեան՝ շապկաւ եւ ուրարաւ կատարել։

ԺԳ. ԶԱւետարանն բշխունաւ եւ շուրջառազգեստ առնուլ, եւ աշտանակօք եւ ի ձայն ընթեռնուլ։

ԺԴ. Զսուրբ գիրս ի թիւ ընթեռնու. զմարգարէականն միայն ի ձայն։ Մի խօքարոզ, իբրեւ զվարդապետ. ծանուցումն

ահանային յորդորանաց բան առ ժողո-ուրդն ։

ԺԵ. Զժամերգութիւնն առաւօտեան եւ լպատարագ ծոմ կատարել։

ԺԶ. Մի այլ ինչ ընթերցմամբ պարապել յեկեղեցւոջ, արտաքոյ Ս. Գրոց ։

ԺԷ. Ցամենայն շաբաթս ջինջ ջրով սրբել զԱւագանն եւ զսրբազան կահս եւ ածել աւել ի խորանի ։

ԺԸ. Ի կիւրակէս եւ ի շաբաթս անխափան Ս. Պատարագ մատուցանել։

ԺԹ. Զկարգ ժամարարութեանն յիւրում շրջանի անխափան կատարել ։

Ի. Նշխար թարմ, անխմոր եւ սպիտակ հանել ի սեղան եւ գինի անապակ ։

ԻԱ. Ժամարարին մի մեկնել յեկեղեցւոյ, բայց եթէ առ հարկի հիւանդութեան ։ Եթէ ոք ի տան ննջեսցէ կամ տայ տեղի բամբա-սանաց աստ եւ անդ դեգերելով, պարտա-ւոր լիցի ատենի ։

ԻԲ. Ժամարարին է աւուր սաղմոսն, նախ ն զժամերգութիւնն ի ծածուկ ընթեռնուլ աջի բեմին ։

ԻԳ. Մկրտութիւնն տաններէցին է, նոյն եւ մյսակն, ի բացակայութեան նորա տեղացի քահանայն փոխանակեսցէ ։

ԻԴ. Հետեւակ քահանային մի մեկնել յեկեղեցւոյ առանց գիտութեան ժամարարին ։

---

## ՄԿՐՏՈՒԹԻՒՆ ԵՒ ԴՐՈՇՄ

ԻԵ. Մի անշուք կատարել զսուրբ խորհուրդսն ։ Դալիրք եւ սարկաւագունք սպասաւորեսցեն ։

ԻԶ. Ութօրեայ մկրտել զմանուկն ։

ԻԷ. Ջինջ ջուր մկրտութեան ։

ԻԸ. Որ զմկրտութեան խորհուրդն ոչ կատարէ ի սուրբ Աւազանի, պարտաւորեսցի ատենի ։

ԻԹ. Մի թոյլ տալ կանանց մերձ առ սուրբ Աւազանն կալ ։

Լ. Սպիտակազգեստ լինել երախային եւ կնքահօրն վառ մոմեղինօք ։

ԼԱ. Զգեստ պատարագի զգենուլ ի կըրտութեան ։

ԼԲ. Կնքահայր երախային ըստ կանոնաց եկեղեցւոյ եւ մի՛ անհարազատս Հայաստանեայց եկեղեցւոյ կամ օտարազգի, կամ կին, կամ տղայ եւ կամ աղջիկ:

ԼԳ. Զքառասնօրեայն մկրտութեան անխափան կատարել:

ԼԴ. Կնքահօրն եւ ծնողաց տալ պատուէր ի հաւատս քրիստոնէութեան ուղիղ դաստիարակել զմկրտեալն:

ԼԵ. Ջուրբ միւռոնն խորհրդոյն առցէ եպիսկոպոսէն:

ԼԶ. Զխորհուրդ դրոշմին խաչանիշ կատարել:

ԼԷ. Յետ մկրտութեան եւ դրոշմի օրհնել զտունն երախային:

ԼԸ. Անուանակոչել զերախայս ըստ ցուցակի Պատրիարքական:

## ԱՊԱՇԽԱՐՈՒԹԻՒՆ

ԼԹ. Որ զկանոնս ապաշխարութեան ոչ դընէ ի վերայ յանցուցելոց, պարտաւոր լիցի տեղի:

Խ. Որ զխոստովանութիւնն ի յայտ հանէ, լուծցի։

ԽԱ. Զխոստովանութիւն ժողովրդեան ըզկնի ժամերգութեան կատարել փիլոնաւ, իսկ զարձակմանն կարդալ ի պահարանի, ձեռն դնելով ի վերայ գլխոյ խոստովանորդւոյն։

ԽԲ. Զխոստովանութիւնն իւր ի դէպ ժամու կատարել. իսկ որ միայնակ իցէ քահանայ, ի ծունր առաջի բեմին, առ Աստուած։

ԽԳ. Զմեղաւորս յորդորել ի խոստովանութիւն եւ յապաշխարութիւն։

---

## ՀԱՂՈՐԴՈՒԹԻՒՆ

ԽԴ. Զծխորդիս յորդորել ի Հաղորդութիւն մարմնոյ եւ արեան Տեառն, ի հինգ տաղաւարս կամ գէթ երիցս ի տարւոջ։

ԽԵ. Մի հաղորդել զողջս նախ քան զսուրբ պատարագն։

ԽԶ. Որ ի տունս ողջոց տանի զհաղորդն, պարտաւորեսցի ատենի։

ԽԶ. Որ ի տան պահէ զորբութիւն պարտաւորեսցի։

ԽԷ. Որ ի կապալս տանի զորբութիւնն, պարտաւորեսցի։

ԽԸ. Զէ արժան անդ տանիլ զորբութիւնն, ուր իցէ եկեղեցի։

---

## ՊՍԱԿ

ԽԹ. Մի ձեռներէց լինել ի խնամէխօսութիւնս։

Ծ. Զնշանման ամուսնութեան, զգինդն, զպարանջանն, զմատանի եւ զշարն յատենի օրհնել եւ մի ի ծածուկ հեթանոսաբար, դէմ յանդիման հարսին եւ փեսային։

ԾԱ. Ըստ ապաշխարութեան եւ հաղորդութեան պսակել։

ԾԲ. Զչափահաս պսակել։

ԾԳ. Որ զերիտասարդ պսակէ ընդ պառաւի, պարտաւոր լիցի ատենի։

ԾԴ. Զպսակն միշտ հրամանաւ եպիսկոպոսի կատարել. իսկ որ գաղտ դնէ պսակ, լուծցի։

ԾԵ. Ըստ ճիւղահամարին առնել զնշանտուք։

ԾԶ. Մի ընել պսակ յետ երիցս ամուսնութեան։

ԾԷ. Զառեւանգսն յետ ապաշխարութեան պսակել։

ԾԸ. Որ զեպիսկոպոսն խաբէ յամուսնութիւնս, պարտաւոր լիցի ատենի։

ԾԹ. Հարսնեւորաց օրհնել եւ տալ բաժակ գինւոյ։

---

## ՊԱՇՏՕՆ ՀԻՒԱՆԴԱՑ

Կ. Հիւանդաց տանել աւետարան եւ խաչ, եւ շուրջառաւ կատարել զպաշտօնն։

ԿԱ. Հիւանդաց տալ Սրբութիւն վառ մոմով եւ շուրջառաւ։

ԿԲ. Զհիւանդս յորդորել յապաշխարութիւն եւ ի գործ բարեպաշտութեան կտակաւ։

ԿԳ. Զկարգ եկեղեցւոյն եւ դերեզմանին ողբաձայն եւ անթերի կատարել։

ԿԴ. Գոց առնել զդրադրան ննջեցելոց ։

ԿԵ. Զհողեհացն ի դիրեքի կիրակամտի օրհնել եւ ուտել ի տան ննջեցելոյն ։

---

## ՀԱՄՔ ՔԱՀԱՆԱՅԻՑ

ԿԶ. Ի գանձանակաց եւ ի այնակէ եկեղեցւոյ.

Ի նշանտուքէ.

Ի պսակէ.

Ի տնօրհնէքէ.

Ի մկրտութենէ.

Ի ժամուցէ.

Ի հանգստենէ.

Ի յատուկ Ս. Պատարագի մատուցմանէ.

Ի կտակաց.

Ի հողօրհնէքէ ։

---

## ԿԵՆՑԱՂԱՎԱՐՈՒԹԻՒՆ ՔԱՀԱՆԱՅԻՑ

ԿԷ. Ցեպիսկոպոսէն առնել ծխացոյց եւ եւ հովուել զժողովուրդն։

ԿԸ. Ի ձուխս խւրաքանչիւր գիւղ միանգամ յամսեանն յայց ելանել ողջունիւ օրհնութեան եւ օրհնել զտունս հաւատացելոց։

ԿԹ. Երկիցս ի տարւոջ ի Ս. Ծննդեան եւ ի Զատկի առնել տնօրհնէք։

Հ. Մի հովուել զտուն հաւատացելոյ, որ է այլում քահանայի, իսկ եթէ ի դէպ լիցի, հրամանաւ եպիսկոպոսին։

ՀԱ. Զտունս յայտնի մեղաւորաց յետ ապաշխարութեան օրհնել։

ՀԲ. Զհոգեւորացն զհետ պնդել յաշխարհայնոցն ի բաց կալով իսպառ։

ՀԳ. Հաւատացելոց տալ յորդոր քրիստոնէական ունել կենցաղ եւ մի հեթանոսական։

ՀԴ. Մի դատարկաշրջիկ լինել, եւ մի պատառատունս զգենուլ, մի անմաքուր, եւ մի ի գինետունս մտանել, կամ խէնէշանալ եւ

կամ հայանել. միշտ ի խրախճանս պարկեշտօրէն կալ ։

ՀԵ . Մի քահանայի տեղափոխել, եթէ ոչ առ հարկի հիւանդութեան եւ հրամանաւ եպիսկոպոսի ։

ՀԶ . Քահանայ, որ զհարսնացեալն իւր թողու ղեկեղեցի առանց հրամանի եպիսկոպոսին, պարտաւորեսցի ։

ՀԷ . Ի վանս կամ յեկեղեցւոջ բնակել քահանայի, եթէ վախճանեալ իցէ կնոջն եւ չունի որդիս ։

ՀԸ . Մի մնալ ի տունս վատահամբաւեալս ։

ՀԹ . Զանուանս անապաշաւ մեղաւորաց ծանուցանել եպիսկոպոսին ։

Ձ . Աղքատաց եւ հիւանդաց տանել խնամ ։

ՁԱ . Քահանայ որ մոլի յարծաթ, պարտաւոր լիցի ատենին ։

ՁԲ . Քահանայ որ վաթսունամեայն է, վատառողջ եւ հիւանդ, ի բաց կալ ի պաշտամանց եւ առնուլ զհաս քահանայական իրաւանց ։

ՁԳ. Որ քրէականս գործէ մեղս, պարտաւորեսցի ատենին.

ՁԴ. Որ բամբասէ զընկեր իւր քահանայ, յիրաւի կամ յանիրաւի, յանդիմանեսցի յատենի յիւրմէ եպիսկոպոսէ.

ՁԵ. Քահանայի միշտ առ աւագերէց իւր դիմել եւ ի ձեռն նորա եպիսկոպոսին.

ՁԶ. Գանգատ զաւագերիցուէն առ եպիսկոպոսն.

ՁԷ. Գանգատ զքահանայէ որ յայլում թաղի, առ նորին աւագերէց, եթէ ոչ լուիցէ, առ եպիսկոպոսն.

ՁԸ. Որ առ դատաւորս երթայ, որպէս իրաւագէտս առ չահու, պարտաւորեսցի ատենի.

ՁԹ. Որ զհաւատս ուրանայ բանիւ բերանոյ, ապաշխարեսցէ, իսկ եթէ յամառեսցի ի մին եւ ապա դարձցի, նա կացցէ ընդ ապաշխարողս ցմահ.

Ղ. Որ պարագլուխ լինի ի խռովութիւնս, եւ կամ ընդդէմ իշխանութեան խօսի բանս, պարտաւոր լիցի ատենի.

ՂԱ. Տալ պատուէր ժողովրդեան իւրում կատարել եւ պահել զսովորութիւնս եւ զաւանդութիւնս Ազգին ։

ՂԲ. Ի շաբաթու միանգամ ժողով քահանայից ։

ՂԳ. Երկիցս ի տարւոջ ժողով քահանայից գահերիցութեամբ եպիսկոպոսին, ի խորհուրդ բարեկարգութեան եւ պայծառութեան եկեղեցւոյ ։

ՂԴ. Աւագերիցին է ի դէպս քահանայից վախճանման, զխաչ, զմաշտոց, զսրբատուփ եւ զզգեստ եկեղեցական, եթէ կայ, առնուլ եւ յղել եպիսկոպոսին ։

